ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 10 1971

ՍՏԵԼԼԱ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ՀԱՅ ԲԺՇԿԱԿԱՆ ՏԵՐՄԻՆԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ XII ԴԱՐՈՒՄ

## (Ըստ Մխիթար Հերացու և Աբուսայիդի կազմախոսական գործերի)

*Հայ բժշկական տերմինաբանության զարգացումը սերտորեն կապված է ընդհանուր բժշկության ու բժշկագիտության զարգացման հետ։ Եվ դա պատահական չէ. ամեն անգամ, երբ որևէ բնախոսական, կազմախոսական, ախտաբանական կամ այլ բժշկագիտական գաղափար հասունանում է, սրա արտահայտման համար լեզուն ստեղծում է գիտական անվանում՝ տերմին։*

*Տերմինակերտման ուղիները հիմնականում երկուսն են։ Տերմին դառնում են տվյալ լեզվի սովորական բառերը՝ սահմանազատվելով և կորցնելով ընդհանուր լեզվին հատուկ բազմիմաստությունը և հուզաարտահայտչականությունը, կամ էլ այդ ընդհանուր նշանակության բառերից տվյալ լեզվի բառակազմական միջոցներով կազմվում են նոր տերմիններ։ Տերմինակերտման երկրորդ ճանապարհը պատրաստ օտար տերմինի փոխառությունն է։ Հայ բժշկական տերմինաբանությունը հարստացել է հիմնականում առաջին ճանապարհով՝ բնիկ հայերեն բառերից տերմիններ ստեղծելով։*

*Ե. Մելիք-Փարսադանյանը[1] վերլուծելով Աստվածաշնչի հայերեն թարգմանության (V դ.) բժշկական և բնագիտական տերմինները, նշում է, որ ս. Գրքի մեջ հանդիպող 175 բժշկական և բնագիտական բառերից 128-ը (այսինքն 73 տոկոսը) հայերեն բառեր են։ Նույն հեղինակը ուսումնասիրելով մի շարք այլ գործեր, որոնց թվում նաև Նեմեսիոս Եմեսացու «Յաղագս բնութեան մարդոյ» երկի VIII դարում կատարված հայերեն թարգմանությունը, հանգում է այն եզրակացության, որ «Ընդհանուր առմամբ մինչև 10-րդ դարը հայ գրականության մեջ գործ են ածված մոտ 900 բժշկական և բնագիտական արմատական բառեր և տերմիններ, որոնց մեջ հունարեն բառերը կազմում են միայն 10 տոկոսը»։*

*Նույն հոդվածում պիտի փորձենք վերլուծել հայ բժշկական տերմինաբանության վիճակը հետագա ժամանակներում, երբ արաբական բժշկությունը գրավել էր տիրապետող դիրք համաշխարհային բժշկության մեջ, և արաբերենը դարձել իսլամական Արևելքի գիտության լեզուն։ Մեր ուսումնասիրության առարկա են հանդիսացել 12-րդ դարի հեղինակներ Մխիթար Հերացու և Աբուսայիդի կազմախոսական գործերը։ Աբուսայիդի «Յաղագս կազմութեան մար-*

1 Ե. Մելիք-Փարսադանյան, *Հայ հին բժշկական և բիոլոգիական լեքսիկայի ծագման մասին, «Հայ բժշկության և բիոլոգիայի պատմության սեկտորի աշխատություններ», Երևան, 1949, էջ 115—123։*

գոյն» (Մաշտոցի անվան Մատենադարան ձեռ. 1978, 549, 8397, 4268, 1814 և այլն) և Մխիթար Հերացու «Ջերմանց մխիթարութիւն» (ձեռ. №№ 715, 5622, 464, 8493) գործերում բժշկական տերմինների ընդհանուր թիվը կազմում է 280, որոնցից միայն 70-ը օտար փոխառություններ են, իսկ մնացած 210-ը, այսինքն 75 տոկոսը, հայերեն[2]: Վերջիններիս զգալի մասը մնացել է մեր լեզվի հիմնական բառաֆոնդում և պատմական տարբեր շրջաններում (գրաբար, միջին հայերեն, ժամանակակից գրական լեզու) պահպանել է իր ձևաիմաստային գոյությունը: Դրանցից են **արմունկ**, **ատամ**, **լեզու**, **գլուխ**, **ոսկր**, **ոտՆ**, **սերմ**, **փայծաղ** և այլն: Ըստ մեր հաշվումների Մխիթար Հերացին օգտագործել է 27 նոր տերմին, որոնք չեն հանդիպում նրանից առաջ, այլ աղբյուրներում, իսկ Ամիրդովլաթի, չնայած նրա գործի ծավալը շատ ավելի մեծ է, 37: Բուն հայերեն տերմինների մի մասը ժամանակի ընթացքում կորցրել է իր բժշկական տերմինաբանական նշանակությունը՝ շարունակելով մնալ ընդհանուր լեզվի կենսունակ տարր: Օրինակ՝ **աղբիւր** բառը Մխիթար Հերացու կազմախոսական գործում օգտագործված է lacus lacrimalis, **արտասուքի աղբյուր** իմաստով: Արդի բժշկական տերմինաբանության մեջ այն փոխարինվել է **արտասվալիճ** տերմինով: **Գործ** տերմինը Ամիրդովլաթը և Մխիթար Հերացին օգտագործել են junctio-ի իմաստով, այժմյան բժշկական տերմինաբանության մեջ այն փոխարինվել է **գործառնություն** տերմինով: **Բաղձ** բառը Ամիրդովլաթի մոտ օգտագործվել է appetitus իմաստով: Այժմ բժշկական աշխատություններում այն չի գործածվում՝ զիջելով իր տեղը **ախորժակ** բառին:

Դրանից բացի միջնադարյան բժշկական գրականության մեջ լայն տարածում ունեցող մի շարք տերմիններ այժմ բոլորովին հնացել են և համարվում են արխաիկ ձևեր: Այսպես, օրինակ, **բէճ** (այժմ՝ 1. **բիակ**, 2. **ուս**), **աղէճուռ** (այժմ՝ **աղիք**), **առատաղ բերանի** (այժմ՝ **քիմք**), **լիսեռ** (այժմ՝ **ողն**), **փող ջնդ** (այժմ՝ **տեսաներդ**) և այլն: Դրանք չեն դիմացել ժամանակի քննությանը, մեր կարծիքով՝ տերմինի անորոշության պատճառով: Օրինակ՝ **լիսեռ** բառը տարբեր շրջաններում նշանակել է 1. **ողն** (vertebra), 2. **ծնկոսկր** (patella), 3. **սրուք** (tibia): Ամիրդովլաթի «Մարդակազմութեան» մեջ արտացոլված է առաջին նշանակությունը՝ **ողն**: Հետագայում բժշկական տերմինաբանության ավելի զարգացած պայմաններում, հավանական է, ավելի հարմար են գտել առանձին տերմիններ ունենալը և հին **լիսեռ**-ը կորցրել է իր նշանակությունը և դարձել արխաիկ: Նույնը կատարվել է **ջրենդ** տերմինի հետ, որը ունեցել է բազմակի նշանակություններ՝ 1. **միզանցք** (urether), 2. **մեզ** (urina), 3. **առնանդամ** (penis): Հետագայում այս բոլոր նշանակությունների համար ստեղծվել են նույնպես առանձին տերմիններ և հին **ջրենդ**-ի իմաստը մթագնվել է:

Որոշ դեպքերում այդպիսի բազմիմաստ տերմինը պահպանվել է արդի տերմինաբանության մեջ շնորհիվ այն բանի, որ նա սկսել է մշտապես արտահայտել այդ բազմակի նշանակություններից միայն մեկը: Օրինակ, **ջիղ** տերմինը Ամիրդովլաթի մոտ բազմիմաստ է. այն գործածվում է՝ 1. **նյարդ**-ի (nervus), 2. **ջիլ**-ի (tendo), 3. **մկան**-ի (musculus) նշանակությամբ, մինչդեռ Մխիթարի մոտ **ջիղ**-ը արդեն միշտ օգտագործվում է **նյարդ**-ի իմաստով: Նույնն ենք գտնում հետագայում Ամիրդովլաթի «Օգուտ բժշկութեան» գործում:

Այսպիսով, իմաստի նեղացման և սահմանազատման հետևանքով **ջիղ**-ը պահպանել է իր նշանակությունը արդի բժշկական գրականության մեջ (**նյարդ**-

---

[2] Հաշվարկ՝ վերջում տրվում է այդ բառերի ցանկը:

ներվ զուգահեռ ձևերի կողքին)։ Հետաքրքրական է, որ Մխիթար Հերացին, Աբուսայիդի ժամանակակիցը, ավելի ճիշտ է հասկացել տերմինաբանության մեջ իշխող առաջադեմ միտումը, քան Աբուսայիդը։

Նույնը կատարվել է երակ տերմինի հետ, որը Աբուսայիդի մոտ ունի բազմակի նշանակություն՝ 1. անոթ (vas), 2. երակ (vena), 3. ջիղ, նյարդ (nervus). Մխիթարը այստեղ էլ կատարել է սահմանազատում, նա նյարդը երբեք չի անվանում երակ, վերջին տերմինը օգտագործելով միայն անոթ-ի իմաստով (հետագայում այս տերմինի իմաստն ավելի նեղացավ և այն պահպանեց միայն իր երակ-vena նշանակությունը)։

Այսպիսի օրինաչափություն նկատվում է նաև այլ տերմինների նկատմամբ։ Օրինակ, բազուկ տերմինը, որն արտահայտել է 1. թև և 2. թևի մաս (ուսից մինչև դաստակը, կամ արմնկից մինչև դաստակը), Աբուսայիդի մոտ ունի նախաբազկի ոսկրի՝ ծղիկի (ulna) իմաստ։ Արդի տերմինաբանության մեջ այն նշանակում է brachium (հուն. βραχίων), այսինքն՝ թևի մաս ուսից մինչև արմունկ։ Արխաիկ նշանակությամբ այն տարածված է ժողովրդական միջավայրում նաև այսօր։ Կամ էլ ծղի, ծղիկ տերմինը, որը Աբուսայիդի մոտ ունի այժմյան բազկոսկր-ի (brachium) նշանակությունը, արդի գրականության մեջ ստացել է (ulna-ի) նախաբազկի միջային ոսկրի նշանակություն։ Այդ տերմինն էլ ունեցել է բազմակի նշանակություն՝ brachium-ից բացի նաև 1. ամբողջ թև. 2. ոտք. 3. ոլոք։ Իմաստային սահմանազատման և նեղացման ճանապարհով նա հարատևեց մինչև մեր օրերը և անցավ արդի բժշկական տերմինաբանությանը ծղիկ (ulna) իմաստով։ Նախաբազկի կողմնային ոսկրի՝ ճաճանչի (radius) անվանումը Աբուսայիդի մոտ դեռևս գոյություն չունի։

Բոլոր դեպքերում չէ, որ տերմինները այդ ճանապարհով պահպանել են իրենց գոյությունը՝ ցուցաբերելով ճկունություն։ Օրինակ, նուռ տերմինը, որը Աբուսայիդի մոտ իր չորս իմաստներից (1. ոտք. 2. թև. 3. ոտքի մաս ազդրից մինչև ծունկը. 4 կոնքոսկր) պահպանել է միայն մեկը՝ կոնքոսկր, դուրս է մղվել արդի բժշկական տերմինաբանությունից, սակայն մնացել է ընդհանուր լեզվի և հատկապես ժողովրդական լեզվի շրջանառության մեջ։ Այդ կարելի է ասել նաև մի քանի այլ տերմինների մասին, որոնք հանդիպում են Աբուսայիդի գործում և հատուկ են միջին հայերենին, ինչպես աչկալ (կույր), աղէնոտ, կռնուկ, դամարցաւ (phlebitis, երակաբորբ)։ Վերջին դեպքում դամարցաւը դարձել է դմուրցաւ։ Սրանք նույնպես դուրս են մնացել գիտական տերմինաբանությունից, սակայն դեռ հանդիպում են ժողովրդական միջավայրում։ Նրանց տեղն են գրավել բնիկ հայերեն բառերը, որոնք ընդհանուր են և գործածական հայերենի բոլոր շրջաններում (կույր, անճառ, աղիք)։

Մխիթար Հերացու և Աբուսայիդի կազմախոսական գործերում տերմինի բազմիմաստության կողքին հանդիպում ենք նաև համանիշության երևույթների։ Այս տեսակետից շատ հարուստ է թաղանթ (membrana, tunica) տերմինը, որը միջնադարում երևան է գալիս 5 համանիշներով՝ 1. աստառ. 2. մաշկ. 3. միզն. միզդ. 4. մորթ. տապաղայ։

Սրանցից երկուսը՝ մաշկ և մորթ, արդի տերմինաբանության մեջ բնավ չեն արտահայտում թաղանթի իմաստ, այլ միայն նշանակում են մաշկ (corium, derma, cutis)։ Արաբերենից փոխառված տապաղա-ն վաղուց է մոռացվել, իսկ միզն, միզդ-ը և աստառ-ը հնացել են։ Արդի բժշկական տերմինա-

բանության մեջ նրանց փոխարինել են հետևյալ համանիշները՝ բաղաճ, պառուտակ, պատյաճ: խոց (ulcus, helcos) տերմինը նույնպես ունի համանիշների մի խումբ՝ 1. կարճայ, 2. բաթ, 3. խաղավարտ. *«Եւ անուանեն կարհայ և բաթ, և խաղաւարտ այլ ասեն» (ձեռ. № 715, 161բ): Սրանցից արդի տերմինաբանության մեջ պահպանվել է միայն* խոց *տերմինը:*

*Աբուսայիդի և Մխիթար Հերացու կազմախոսական աշխատություններում օգտագործված բժշկական տերմինների հայկական շերտը ապացույց է հայերեն լեզվի հարստության և ճկունության, որը հնարավորություն է ընձեռել ստեղծելու ուրույն և ճոխ բժշկական տերմինաբանություն:*

*Սակայն հայ բժշկությունը, սրա հետ միասին և հայկական տերմինաբանությունը, երբեք չեն մեկուսացել չինական պարիսպով, այլ օգտվել են առաջադեմ ազգերի գիտություններից՝ միշտ հարստանալով նրանց գանձերով: Այդպիսի սերտ կապեր դարեր շարունակ գոյություն են ունեցել հայ և հունահռոմեական բժշկության ու բժշկական տերմինաբանության միջև: Հունարեն և լատիներեն տերմինները հաճախ են գործածվել հայ բժիշկների կողմից: Այդ տերմինների հիման վրա ստեղծված X դարի հունարեն-հայերեն բառարանը՝ «Բառք Գաղիանոսի բժշկարանի», ընդգրկում է մոտ 400 բառ: Սրանցից միայն մի փոքր մասն ստացավ լայն կիրառում և հարատևեց մինչև մեր օրերը:*

*X դարից ուժեղանում է արաբական բժշկության ազդեցությունը: Հայ բժշկական գրականության մեջ արաբական տերմիններն օգտագործվում են ոչ հազվադեպ: Այսպես, օրինակ, ըստ Վ. Թորգոմյանի տվյալների*[3]*, Գագիկ Ա-ի օրոք գրված բժշկարանում (X դար) երևան են գալիս արաբական տերմիններ՝* կառուրայ, պուհրան, ճապ, ճալիլայ, պլղամ, սաֆրայ, սավտայ, սապր, մանուճ *և այլն:*

*Մեր կողմից ուսումնասիրված Մխիթար Հերացու և Աբուսայիդի կազմախոսական գործերի մեջ օգտագործված են 70 օտար տերմիններ, որոնց մեծ մասը (57) կազմում են արաբերենից փոխառված տերմինները: Մնացած օտարաբանությունները, ըստ ծագման, հետևյալ պատկերն են տալիս. հունական՝ 7, պահլավական-պարսկական՝ 3, թաթարական՝ 2, ասորական՝ 1: Այդ 70 փոխառված տերմիններից միայն 20-ը չեն թարգմանված և չունեն հայերեն զուգահեռ տերմիններ: Դրանք վերաբերում են գլխավորապես ճանաչված, լայն տարածում ունեցող հիվանդությունների և գլխավոր հեղահյութերի անվանումներին* (սաւֆրայ, լակուայ, ֆալիճ, սաֆրայ, սավտայ) *կամ այն բառերին, որոնք վաղուց փոխառված լինելով, արդեն չէին զիտվում իբրև օտար բառեր և կազմում էին նոր բառաբարդություններ՝ օրինակ.* զեճ-զեճութիւն, անիկ-անիկել, ղալապայ առնել, խումար-խումարութիւն):

*Անհրաժեշտ է նշել, որ արաբերեն և մյուս օտար տերմինները բոլոր ձեռագրերում գրվել են հայատառ: Հայերեն և օտար լեզուների, առանձնապես արաբերենի, հնչյունական զգալի անհամապատասխանությունները ստեղծում են դժվարություններ բառարանի օգնությամբ օտար տերմինի ծագումը պարզելու համար: Նյութի վերլուծության հիման վրա (տե՛ս ստորև տրված աղյուսակը) մենք հանգում ենք միջնադարում արաբերեն բաղաձայնների հայերեն*

---

3 Վ. Թորգոմյան. *Հայ բժշկական ձեռագիրը Ս. Ղազարու վանքին. Բազմավէպ, 1923, էջ 7—11, 39—43, 69—71:*

## ԲԱՂԱՁԱՅՆՆԵՐԻ ԱՐԱԲԵՐԵՆ-ՀԱՅԵՐԵՆ ՏԱՌԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆԸ ՄԻՋԻՆ ՀԱՅԵՐԵՆՈՒՄ

| Արաբ. | Հայ. | օրինակներ | | |
|---|---|---|---|---|
| ب | պ | رب — պապ | | رطوبة — բռուտուպաթ |
| ت | թ | انتشار — ինթիշար | | ملتحمة — մուլթահիմայ |
| ث | թ | الاثنى عشري — իթնայաշարայ | | مثقال — միթխալ |
| ج | ճ | فالج — ֆալիճ | | زجاجي — զուճաճի |
| ح | հ | قرحة — կարհայ | | ملتحمة — մուլթահիմայ |
| خ | խ | خلط — խիլտ | | خمار — խումար |
| د | տ | سوداء — սավտայ | | دقيق — տաքիք |
| ذ | զ | جاذب — ճազիպ | | |
| ر | ռ, ր | رطوبة — բռուտուպաթ | | خمار — խումար |
| ز | զ | زجاجي — զուճաճի | | |
| س | ս | سكتة — սաքթայ | | سوداء — սավտայ |
| ش | շ | شبكية — շապաքիյայ | | شريان — շիրիան |
| ص | ս | صائم — սայիմ | | صفراء — սաֆրայ |
| ض | զ | عضلة — ազալա(ունր) | | هاضم — հազիմ |
| ط | տ | طبقة — տապաքայ | | خلط — խիլտ |
| ع | յ, հ, — | عنبية — յանապիայ | علة — հիլաթ | عضلة — ազալա(ունր) |
| غ | ղ | غب — ղալապայ | | مغص — մաղսա |
| ف | ֆ | فالج — ֆալիճ | | طبقة — տափիայ |
| ق | ղ, կ, խ* | قولون — ղուլին | مستقيم — մուստաղիմ | لقوة — լակուայ |
| ك | ք, կ | سكتة — սաքթայ | شبكية — շապաքիյայ | عنكبوتية — յանկապութիյայ |
| ل | լ | غب — ղալապայ | | لقوة — լակուայ |
| م | մ | مغص — մաղսա | | مشيمة — մշիմայ |
| ن | ն | عنبية — յանապիայ | | شريان — շիրիան |
| ه | հ | هاضم — հազիմ | | هواء — հաւայ |
| و | ւ, վ | هواء — հաւայ | | سوداء — սավտայ |

տառադարձության վերաբերյալ որոշ եզրակացությունների, որոնք համընկնում են Կ. Բասմաջյանի[4] և Հ. Կարստի[5] տվյալների հետ։

Արաբերեն այս բառերը փոխառվել են հայերեն բաղաձայնների ձայնային տեղաշարժից հետո (այսինքն միջին դարերում). այդ պատճառով էլ կատարված ձայնաշրջությունը ստանում է իր գրային արտահայտությունը։ Ըստ որում, օտար լեզվի ձայնեղ բաղաձայնները տառադարձվում են խուլերի՝ օրինակ, արաբերենի ب-պ-ի(رب-պապ), د-տ-ի(سوداء-սավտայ), ج-ճ-ի(جاذب-ճազիպ), սակայն արտասանվում են միջին հայերենի լեզվային օրենքների հիման վրա իբրև ձայնեղ հնչյուններ՝ բ, դ, ջ, տալով՝ բաբ, սավդայ, ջազիբ։ Եթե

* Հազվադյուտ է կիրառվում, օրինակ՝ قنينة — խանինէ։

[4] Կ. Բասմաջեան, Ամիրդովլաթ Ամասիացւոյ «Անգիտաց անպէտ». Յառաջաբան հրատարակչին, Վիեննա, 1927, էջ ԺԱ—ԺԲ։

[5] J. Karst, Historische Grammatik des Kilikisch-Armenischen, Strasburg, 1901.

արաբերեն-հայերեն բաղաձայնների տառադարձության հարցում գոյություն ունի խիստ օրինաչափություն, ապա արաբերեն-հայերեն ձայնավորների տառադարձության ժամանակ ճիշտ տառադարձված բառերի կողքին, օրինակ՝ خمار-խումար, دقيق-դաղիղ, مغص-մաղաս և այլն, մենք հանդիպում ենք անկանոնության երևույթների՝ հայերենում օտար ձայնավորների սղման, արաբերենի տվյալ ձայնավորի դիմաց մի այլ ձայնավորի առկայության: Այսպես, օրինակ, قرحة վերածվել է հայերենում կարհայ-ի (արաբերենի ու-ն դարձել է հայերենում ա), قولون-ղուլին (արաբերենի ու-ն տվել է հայերենում ի), مشيمة-մշիմա (արաբերենի ա-ն սղված է): Կարստ իր «Կիլիկյան հայերենի պատմական քերականության» մեջ (էջ 38) բացատրում է այս երևույթը ոչ թե հայերեն ձայնավորների օրենքների ազդեցությամբ, այլ մեծ մասամբ խոսակցական արաբերենի ազդեցությամբ և մասամբ էլ իբրև ոչ ճշգրիտ, անփույթ տառադարձության հետևանք:

Արաբերեն և այլ օտար տերմինները թարգմանելիս և նրանց կողքին բուն հայերեն տերմիններ ստեղծելիս Աբուսայիդը և Մխիթար Հերացին հանդես են գալիս՝ 1. թարգմանչի, 2. ինքնուրույն տերմիններ ստեղծողի դերում:

Աբուսայիդը առաջինի դերում հանդես է գալիս շատ հաճախ, ավելի կամ պակաս հաջողությամբ: Նա մեծ թվով ստամոքսի և աղիների կազմախոսությանը վերաբերող տերմիններ է թարգմանել արաբերենից:

Ստամոքսի 4 ուժերը՝ Քարշող (جاذب), բռնող (ماسكة), մարսեցնող (هاضم), վարող (دافعة), թարգմանված են բավական հաջող բառապատճենմամբ: Աբուսայիդը, ինչպես տեսնում ենք, օգտագործել է ենթակայական դերբայի ձևը, որը տերմինային կապակցության մեջ որոշչի դեր է կատարում:

Աղիների հատվածներին վերաբերող տերմինները թարգմանելիս (նույնպես բառապատճենմամբ) Աբուսայիդն արդեն այսպիսի հաջողության չի հասնում: Այսպես. ստամոքսանցքի համար թեև նա օգտագործում է արաբերենի պապ (باب դուռ) բառը, բայց տարօրինակ կերպով դրա դիմաց դնում է դռնապան հայերեն ճիշտ տերմինը: Այդ սխալը հետագայում ուղղել է Ամիրդովլաթը՝ արաբերեն باب (դուռ) դարձնելով պավապ بواب (դռնապան): Բայց ելնելով արաբերեն սխալ բառից, Աբուսայիդը կարող էր տալ հայերեն ճիշտ տերմին միայն այն դեպքում, երբ նրան հայտնի լիներ լատիներեն pylorus (դռնապան) ձևը: Այս փաստը և հետագա վերլուծությունից ստացված այլ տվյալներ գալիս են հաստատելու, որ հայ բժիշկները քաջածանոթ են եղել հույն-հռոմեական բժշկության նվաճումներին և օգտվել են նրանցից նույնիսկ արաբական բժշկության ծաղկման շրջանում: Տասներկումատնյա աղիք الاثنى عشري Աբուսայիդը բառացի թարգմանել է՝ երկոտասան և այս էլ որոշ չափով համապատասխանում է լատինական տերմինին (duodenum):

Շատ հաջող է թարգմանված ցամաք աղէնոտ տերմինը, որը ճիշտ և ճիշտ համապատասխանում է ինչպես արաբերեն, նույնպես և լատիներեն տերմինի իմաստին (jejunum صائم), և նույնիսկ պահպանված է բառակապակցության քերականական ձևը: Այստեղ անհրաժեշտ ենք համարում հիշատակել, որ արաբ բժիշկները, իրենց տերմինաբանական կարիքների համար, հաճախ դիմել են հույն-լատինական տերմինների օգնությանը՝ մասամբ թարգմանելով

կամ բառապատճենմամբ (ինչպես այդ տեղի է ունեցել վերոհիշյալ դեպքերում), մասամբ էլ պահելով իրենց օտարաբանությունները (colon-قولون, grafidion-[illegible]): Երբեմն էլ նրանք չեն հետևել հունա-լատինական տերմինաբանությանը և ստեղծել են նոր տերմիններ: Այսպես, բարակ աղիների երրորդ մասը, որը ունի լատիներեն ileum (զստային) անվանումը, արաբների մոտ երևան է գալիս իբրև دقيق, որը Աբուսայիդի կողմից ճիշտ է թարգմանված՝ մանր: Արդի հայ տերմինաբանության մեջ սրա փոխարեն գործ է ածվում ուրիշ տերմին՝ գալարաղիք կամ զստաղիք (վերջինս լատիներենի ուղիղ թարգմանությունն է):

Աբուսայիդը բավական անհաջող է թարգմանել հաստ աղիքին վերաբերող արաբերեն տերմինները: Այստեղ ստեղծվում է այն տպավորությունը, որ թարգմանիչը չի հասկացել արաբերեն տերմինները կամ դրանք թարգմանել է իր ինքնուրույն ստուգաբանությամբ[6]: Այսպես, օրինակ, հաստ աղիների առաջին հատվածի արաբերեն الاعور (կույր) անվանումը, որը համընկնում է լատիներենի coecum իմաստի հետ, կամ չհասկանալու պատճառով, կամ էլ որոշ կազմախոսական նկատառումներով թարգմանված է ծուռ: Հաստ աղիների երկրորդ հատվածի արաբերեն قولون անվանումը թարգմանվել է հայերեն ձայնավոր: Արդի բժշկական տերմինաբանության մեջ օգտագործվում է խթաղիք ձևը (հունարեն κόλον բառի ուղիղ թարգմանություն): Վերջապես, հաստ աղիների ստորին մասը, որը լատիներեն և արաբերեն տերմինաբանության մեջ ունի նույն ուղիղ-ի իմաստը (rectum, المستقيم), հայերենում Աբուսայիդի կողմից անվանված է հիմն և զգայութիւն աղէնուտացն: Արդի գրականության մեջ վերականգնվել է ճիշտ տերմինը՝ ուղիղ աղիք:

Աբուսայիդի կազմախոսության մեջ տեղ են գտել նաև մի շարք աստղագիտական արաբերեն տերմիններ (իրենց զուգահեռ հայերեն ձևերով), որոնք սերտորեն կապված են կազմախոսական հասկացությունների հետ: Աբուսայիդը իր «Մարդակազմութեան» մեջ տուրք է տալիս միջնադարում իշխող միստիկ աստղագուշակային տեսություններին, որոնք կապում էին մարդու մարմնի ամեն մի գործարան արեգակի, լուսնի կամ էլ որևէ մոլորակի ազդեցության հետ: Այսպես, օրինակ, լուսինը համարվում էր ուղեղի և թոքի տանուտեր, արեգակը՝ սրտի, լուսնթագը (արաբ. مشتري Մուշթարի, լատ. Yupiter)՝ լյարդի, Փայլածուն (արաբ. عطارد Ուտարիդ, լատ. Mercurius)՝ լեզվի, Հրատը (արաբ. المريخ Մառիխ, լատ. Mars)՝ լեղապարկի, Լուսաբերը (արաբ. الزهرة Զուհրայ, լատ. Venus)՝ ամորձիքի, երիկամի. Մոլորակների անունները, փաստորեն, դարձել են այդ գործարանների խորհրդանիշներ, և Աբուսայիդը հաճախ ձգտել է բացատրել տարբեր հիվանդությունների բնույթը այդ մոլորակների անմիջական ազդեցությամբ: Օրինակ, նա գրում է. «Երբ որ ծնանի տղայն ի մօրէն, թէ յայն ժամն լուսինն ի պեղծ աստեղատանն լինի, տղին աչքն շլատ լինի և ցաւոտ: Եւ երբ տղայն ծնանի ի մօրէն, և լուսինն ի Զօհալին աստեղատունն լինի, տղայն աչիկոյ լինի» (Ձեռ. № 1978, 103բ): Ի տարբերություն Աբուսայիդի, Մխիթար Հերացին այդ երևույթները

6 Չի բացառված նաև այն հանգամանքը, որ տերմինները կարող են աղճատված լինել ձեռագրում, քանի որ Աբուսայիդի «Վասն ստեղծման աղէնորացն» գլուխը շատ աղավաղված է, և երկար աշխատանքից հետո, Ամիրդովլաթի «Օգուտ բժշկութեան» համապատասխան հատվածի հետ համեմատություններ կատարելով, մեզ հաջողվեց խաթարված բնագիրը վերականգնել:

փորձում է բացատրել գիտականորեն, կապելով աչքի մկանների բորբոքային պրոցեսների հետ։

Կատարված ուսումնասիրությունը մեզ հանգեցրեց այն եզրակացության, որ Աբուսաիդը, իբրև թարգմանիչ, երբեմն գտել է ճշգրիտ հայկական տերմիններ, երբեմն էլ շեղվել է ուղիղ ճանապարհից։ Նրա դերը ինքնուրույն տերմիններ ստեղծելու գործում ավելի փոքր է։

Անցնենք Մխիթար Հերացուն՝ իբրև տերմինաբանի բնութագրմանը։ Բարեբախտաբար, մեզ են հասել նրա կազմախոսական գործի այն գլուխները, որոնք վերաբերում են «Աչաց կազմութեան»-ը։ Աբուսաիդի «Մարդակազմութեան» այս մասը շատ թերի է թե՛ գիտական արժեքի և թե՛ տերմինաբանական տեսակետից։ Աբուսաիդը այստեղ տալիս է միայն արաբերեն տերմիններ առանց դրանց թարգմանության. շատ հաճախ էլ այդ տերմինները անճանաչելիորեն աղճատված են, օրինակ խառնիէ-ի (cornea) փոխարեն՝ ղունիէ, շապաքիայ-ի (retina) փոխարեն՝ շպիճնէ, մշիմայ-ի (chorioidea) դիմաց՝ ուշբամիէ:

Մխիթար Հերացու «Վասն շինուածոյ և յօրինուածոյ աչացն» գործը ունի բարձր մասնագիտական արժեք և փայլում է իր լեզվի հարստությամբ։ Նա այդ գործում իրեն դրսևորել է իբրև իմաստուն բժիշկ և լեզվաբան։ Նա ստեղծում է մի շարք իմաստալից հայերեն տերմիններ, որոնք դադարում են միայն թարգմանություն լինելուց և ստանում են բառակազմական նորաբանությունների որակ։

Հարկ ենք համարում նորից շեշտել, որ Մխիթար Հերացին, ի տարբերություն Աբուսայիդի, ճիշտ կողմնորոշվեց մկան և երակ տերմինների օգտագործման հարցում՝ մոտենալով դրանց կիրառման արդի նշանակությանը։

Աչքի կազմախոսական հայկական տերմինաբանությունն սկսվում է փաստորեն Մխիթար Հերացուց։ Աչքի թաղանթների և հեղուկների համար նա ստեղծել է բառապատճենմամբ հայերեն բարեհնչուն և ճշգրիտ տերմիններ, օրինակ, եղջերենի (լատ. cornea, արաբ. قرنية), խաղողենի (uvea Galeni, عنبية), սարդոստենի (արաբ. عنكبوتية), սառնենի (lens crystallina, جليدي), ձվի սպիտակուցենի (humor aqueus), ապիկենի (corpus vitreum, زجاجي): Դրանցից միայն երկուսն են պահպանված արդի բժշկական տերմինաբանության մեջ (դրանք են՝ եղջերենի և ապիկենի): Ենի վերջածանցով կազմված այս տերմինները բավական եղան, որպեսզի հետագայում Մխիթար Հերացու տերմինակերտման ուղիով և հետևությամբ ժամանակակից ակնաբուժությունը նույն ածանցով ստեղծեր մի շարք նոր տերմիններ, ինչպես՝ ցանցենի, անոթենի, շաղկապենի, պնդենի (վերջինս ընդօրինակված է Հերացու պինդ մարմին տերմինից և նրա տերմինակազմական սկզբունքով դարձել է պնդենի):

Շատ հետաքրքրական է սառնենի տերմինի պատմությունը։ Այն ստեղծելիս Մխիթար Հերացին իբրև ելակետ ունեցել է արաբերենի جليدي (սառցային) և լատիներենի lens crystallina (բյուրեղային ոսպ) ձևերը։ Նա բառացիորեն չի թարգմանել այս երկու տերմիններից որևէ մեկը, այլ վերցրել է հայերենի սառնենի բառը, որն այն ժամանակ նշանակել է և՛ բյուրեղ, և՛ սառույց։ Այսպիսով, երկու իմաստների համադրության ճանապարհով նա ստեղծել է նոր տերմին, որն ավելի խորն է բնութագրում աչքի այս հեղուկի հատկությունները, քան լատիներեն կամ արաբերեն տերմինները։ Այստեղ Հերացին ցուցաբերել է նոր տերմիններ ստեղծելու բարձր արվեստ։ Օգտվելով հնա-

լատիներեն տերմինաբանության հարստությունից՝ նա ընտրել է ուրույն, հայերեն լեզվին հարազատ ճանապարհ։ Ցավոք սրտի, Հերացու այս հոյակապ տերմինը չեն պահպանել արդի հայ բժշկական բառարանները՝ նրա փոխարեն գործածելով ոսպնյակ տերմինը, որը այդ անվան լատիներենի (lens) թերի թարգմանության օրինակ է։ Ի դեպ հիշենք, որ արաբներն էլ մեզ նման հետագայում մոռացան իրենց جليدي (սառցային) տերմինը և հետևեցին լատիներենին, օգտագործելով عدسة (ոսպնյակ)։

Բացի նշի մասնիկից, Մխիթար Հերացին ստեղծել է մի շարք տերմիններ ած մասնիկով, որպիսիք են՝ կոշրած (conjunctiva, ملتحمة), մազկալած (ոսպնյակի մասին՝ նուրբ ճեղքվածքներ ունեցող), խծկած (occlusio pupillae), փարած (բիբի լայնանալուց լույսի տարածում)։

Ինչ վերաբերում է Մխիթարի երկու այլ տերմիններին՝ սեկ (chorioidea, مشيمة) և արկ (retina, شبكية), ապա սրանք լայն ճանաչում չստացան և փոխարինվեցին արդի տերմինաբանության մեջ անոթենի և ցանցենի տերմիններով՝ երկուսն էլ Մխիթարի ոգով ստեղծված։ Պատմական տեսակետից հետաքրքրական է վերջին տերմինը։ Այն ստեղծելիս մեր բժշկապետը իբրև ելակետ ունեցել է լատիներեն retina (ցանց) և նույն իմաստով արաբերեն شبكية տերմինները։ Հավանական է, որ այն ժամանակ հայերեն արկ բառը արտահայտել է նաև ցանցի իմաստ, բայց հետագայում այդ իմաստը մթագնել է։ Ի դեպ հիշենք, որ Հերացու այս երկու տերմինները, ի տարբերություն նրա այլ տերմինների, չունեն իրենց հարակից ձևերը և մեկուսացված են։

Մի հետաքրքրական հանգամանք ևս. բնութագրելով կոշրած աստառի (աչքի շաղկապենու) հատկությունները, Մխիթար Հերացին օգտագործել է այժմ արխաիկ խոնտամ ձևը։ Հավանական է, որ նա հենց ինքն է ստեղծել այդ տերմինը՝ օգտագործելով խոն, խոչ (արգելք, փուշ), և տամ (ջուլհակի սանր) բառերը, որից ստացել է խոնտամ, այսինքն՝ անհարթ, կոշտ, իմաստն ունեցող նոր բառը։ Ասում են, երբ հոլանդական ֆիզիկոս Վան-Հելմոնտը ստեղծել է գազ բառը, նա մտածել է երկու բառերի մասին՝ Chaos (քաոս) և Geist (ոգի), որոնք յուրովի արտահայտում էին նոր նյութի հատկությունները[7]։ Հավանաբար նույնը պատահել է Մխիթարի հետ։ Եվ այդ գալիս է հաստատելու հայ բժշկապետի մեծ կարողությունը ոչ միայն իբրև բժշկի, այլ տերմինաբանի նաև. խոնտամ տերմինը ստեղծելիս, ըստ երևույթին, նա կարողացել շաղկապենու վրա նշմարել աննշան բշտիկներ, անհարթություններ, որոնք նկարագրված են արդի գրականության մեջ։

Ինչ վերաբերում է հունա-լատիներեն փոխառված տերմիններին, ապա դրանք օտարաբանությունների շարքում գրավում են երկրորդ տեղը, զիջելով միայն արաբերեն տերմիններին։ Պետք է նաև նշել, որ որոշ դեպքերում հունարեն և լատիներեն տերմինները հայերենին անցել են արաբերենի միջնորդությամբ։ Օրինակ, հունարեն κῶλον (լատ. colon) նախ անցել է արաբերենին قولون ձևով և ապա տառադարձվել հայերենում ղուլին (ق-ղ)։ Նույնը կատարվել է հունարեն κωλική, լատ. (colica) խիթք բառի հետ, որը արաբերենում դառնում է قولنج, իսկ հայերենում՝ ղուլինջ և հունարեն γραφίδιον (լատ. grafidion) գրքույկ բառի հետ, որը տալիս է արաբերենում اقرابادين և հայերենում՝ ախրապատին (դեղարան)։

7 *А. Реформатский*, Введение в языкознание, Москва, 1955, стр. 113.

*Մնացած 4 հունա-լատիներեն տերմինները անցել են հայերենին առանց արաբերենի միջնորդության՝* καφαλική (vena cephalica)—կիֆալ երակ[8], καθολική (vena catholica)—կաթուղիկե, βασιλική (v. basilica)—պասիլիկ երակ: *Ձայնեղների որոշ փոփոխությամբ հանդիպող հունարեն* στόμαχος (stomachus) *տերմինը բավական ճիշտ տառադարձվել է* ստամոքս: *Հավանաբար լատիներեն ծագում ունի* լուսէնիոն *(տեսանելի) տերմինը. (լատիներեն* lux լույս, աչք, տեսողություն *բառի աղճատված ձևը): Այսպիսով, հունա-լատիներեն տերմինները, ուսումնասիրված օտարաբանությունների շարքում գրավելով երկրորդ տեղը (արաբերենից հետո), վկայում են այն խոր ազդեցության և հարատև կապերի մասին, որոնք միշտ գոյություն են ունեցել հունա-հռոմեական և հայ բժշկության միջև նույնիսկ արաբական բժշկության տիրապետության շրջանում[9]: Այս տերմիններն ունեն կազմախոսական կարևոր նշանակություն* (տեսանելի, բազկի մեծ երակներ, ստամոքս, հաստ աղիների ծավալուն հատված) *և եղել են շատ տարածված:*

*Աբուսայիդի և Մխիթար Հերացու կազմախոսական գործերում հանդիպում են պահլավերեն ծագում ունեցող 16 տերմին[10], որոնք շատ վաղուց են անցել հայերենին և այնպես անբաժանելիորեն ձուլվել հայերենի բառապաշարին, որ մեծ մասամբ, բացի վերջին 3—4 տերմինները, չեն դիտվում իբրև օտարաբանություն: Այդ տերմիններն են՝* ախտ, արկ, անդամ, աստառ, անտիճեղիք, ապիկենի, բժիշկ, բազուկ, ճակատ, ճվագ, սկուտակ, երակ, ջիրիկ, պիսակ, զեն, անոկ:

*Վերջապես թաթարերենից միայն երկու օտարաբանությունների առկայությունը (ըստ որում, մեկը՝* սնկ, *հետագայում չստացավ ճանաչում և մոռացվեց, իսկ մյուսը՝* ֆուրեջ, *ճիշտ է, հարատևեց մինչև մեր օրերը, բայց ունի հայերեն ավելի հաջող զուգահեռ ձևեր՝* ճարսանիր, վարդածոց) *ապացույց է թաթարերենի աննշան ու պատահական ազդեցության:*

*Հետաքրքրական է, որ մեր կողմից ուսումնասիրված տերմիններից միայն մեկը ունի ասորերեն ծագում[11]. այդ* մաշկ *(ասոր.* meška*—մորթ) բառն է: Այսպիսով, Վ. Թորգոմյանի[12] կարծիքը այն մասին, որ* Աբուսայիդի *«Մարդակազմութիւն»-ը լի է ասորերեն օտարաբանություններով, չի ապացուցվում, և մենք համամիտ ենք Գ. Հովնանյանի[13] հետ, որը ժխտեց Թորգոմյանի թեզը և բարձր գնահատեց հայ մշակույթին ծառայագրված ասորի գիտնական Աբուսայիդի «Մարդակազմութեան» հայերեն հստակ լեզուն:*

*Բացի բառ-տերմինից Աբուսայիդի և Մխիթար Հերացու կազմախոսական գործերում հանդիպում ենք նաև տերմին-նկարագրության, որը հետագայում,*

---

8 Հ. Աճառյանը *«Հայոց լեզվի պատմության» մեջ (մաս 2, էջ 195)* կիֆալը *դասել է արաբերեն օտարաբանությունների շարքում, սակայն ավելի հավանական է թվում այդ բառի հունարեն ծագումը՝* κεφαλική:

9 *Л. А. Оганесян*, История медицины в Армении, Ереван, 1946 т. I, стр. 150—184. Հ. Մ. Ամալյան, *«Միջնադարյան Հայաստանի բառարանագրական հուշարձաններ», Երևան, 1966, էջ 180—183:*

10 Հ. Աճառյան, *Հայերեն Արմատական բառարան, Երևան, 1927—32:*

11 *Նույն տեղում:*

12 Վ. Թորգոմյան, *Հայ բժշկական ձեռագիրք. Բ. Մարդակազմութիւն Աբուսայիդի, Հանդէս ամսօրեայ, 1892, էջ 333—336:*

13 Գ. Յովնանեան, *Հետազօտութիւնք նախնեաց ամկորէնի վրայ, Վիեննա, 1897, 2 հատ., էջ 491—505:*

այլ բժիշկների գործերում դարձավ բառ-տերմին։ Այսպես, օրինակ՝ Աբուսայիդը երկու զգայարաններին տալիս է բառ-տերմին անվանումներ՝ լսելիք, տեսանելիք։ Երկու այլ զգայարաններ՝ ճաշակելիք և հոտոտելիք, նրա մոտ նկարագրվում են և չունեն կոնկրետ տերմինավորում։ Այսպես. «Եւ երակ մի է բերնին առաստաղն կայ. որ զամէն համ իմանայ» (ձեռ. № 715, էջ 176բ)։ «Բ երակ զատարկ ի քիթն յուղարկեաց, որ զանուշ հոտն առնու և յղեղն առաքէ» (ձեռ. № 715, էջ 176բ)։ Այս երկու տերմին-նկարագրությունները մոտ 3 դար հետո Ամիրդովլաթի մոտ տերմինավորվում են՝ դառնալով համ-առնելիք և հոտալիք[14]։ Հինգերորդ զգայարանի՝ շոշափելիքի գաղափարը Աբուսայիդի մոտ դեռևս գոյություն չունի, իսկ Ամիրդովլաթի մոտ հանդիպում ենք նրա նկարագրությանը՝ «Եւ Ե զգայութիւն, որ իմանայ զխոշորն և զկակուղն և զծանրն և զթեթեւն, և այս ի ձեռն է ապաւորեալ, և այս զգայութիւնն կոպիտ է քան զամէնն»։ Հետագայում նա նույնպես ստացավ համապատասխան անուն, որպես բառ-տերմին՝ շոշափելիք։

Տերմին-նկարագրությանը մոտ են Աբուսայիդի մի շարք կազմախոսական տերմինները՝ լուծումն ի վեր՝ փսխումի փոխարեն, լուծումն ի վար՝ լուծ, փորլուծություն իմաստով, արտաքսելն առաջին՝ միզանցքի բացվածքի, և արտաքսելն վերջին՝ հետանցքի սրբանի, ծննդոց տեղ՝ կոնքի և կար արիւն՝ ավշի. ավշային անոթի նշանակությամբ։ Այս տերմինները տերմին-նկարագրության համեմատությամբ արդեն դարձել են ավելի սեղմ, ազատվելով նկարագրության մեջ երկրորդական դեր կատարող բառերից, բայց նրանք դեռ չեն արտահայտում բառ-հասկացության խտացված իմաստը և կրում են անորոշության և պատահականության գծեր։ Այդ պատճառով էլ նրանք չհարատևեցին մինչև մեր օրերը և փոխարինվեցին բուն բառ-տերմիններով, որոնք խտացված ձևով և սեղմ, որոշակի արտահայտեցին կազմախոսական հասկացության իմաստը։

Ընդ որում, նշենք, որ Աբուսայիդի ծննդոց տեղ հայերեն տերմինի փոխարեն հետագայում օգտագործվեց կոնք-ը, որը հունարեն κόγχη (1. խեցի, խեցեմորթի, 2. խեցեմորթու պես գոգավոր աման) բառի փոխառյալ ձևն է։ Հետաքրքրական է, որ այդ կազմախոսական հասկացության համար լատիներենում օգտագործվել է pelvis (տաշտ) անվանումը, որը անցել է փոխառյալ ձևով անգլերենին (pelvis) և թարգմանաբար ռուսերենին (таз), արաբերենին حوض, գերմաներենին (Becken), ֆրանսերենին (Bassin)։ Մինչդեռ հունարենի κόγχη տերմինը հայերենից բացի այդ վերոհիշյալ լեզուներում չունի կոնքի իմաստ, ինչպես սրա պարզ փոխառության մեջ (համեմատիր ֆրանսերենի conque բառը, որը արտահայտում է միայն խեցի, խեցեմորթի իմաստը) և այնպես էլ համապատասխան ռուսերենի раковина, գերմաներենի Muschel, անգլերենի Shell բառերում, արաբերենի صدف-ում։ Նկատի ունենանք նաև, որ այդ տերմինը՝ կոնք (pelvis, Bassin, Becken, таз, حوض) տարբեր լեզուներում առնվել է արտաքին նմանության սկզբունքով, ընդ որում, հայերն այն նմանեցրին խեցեմորթի ձև ունեցող ամանին, իսկ հռոմեացիք և նրանց օրինակով անգլիացիք, գերմանացիք, ռուսները և ֆրանսիացիք՝ տաշտին, ավազանին։

Այդ տերմիններից կար արիւն (այժմ 1. ավիշ, 2. ավշանոթ) տերմինի առկայությունը Աբուսայիդի մոտ ապացույց է այն բանի, որ հայ կազմախոսա-

[14] Ամիրդովլաթ Ամասիացի, Օգուտ բժշկութեան, Երևան, 1940, էջ 44։

թյունը դեռևս 12-րդ դարում բավական լավ պատկերացում ուներ մարդու ավշային սիստեմի մասին, որի մանրամասն նկարագրությունը եվրոպական գրականության մեջ երևան եկավ 17-րդ դարում Գասպարո Ազելլիի, Պեկի, Վան-Հոռնի և այլոց գործերում:

Վերոհիշյալ պրիմիտիվ տերմիններից է նաև ջուր տերմինը (արդի բժշկական տերմինաբանության մեջ secretum արտազատուկ) և նրանից ածականի հարակցությամբ կազմված ենթատեսակ տերմինները՝ ջուր աղի՝ արտասուքի, ջուր լեղի՝ ականջի ծծումբի, ջուր քաղցր՝ թուքի և ջուր հոտած՝ սերմի իմաստով: Սրանցից երկուսի համար՝ ջուր աղի և ջուր հոտած, Աբուսայիդը օգտագործել է զուգահեռաբար՝ արտասուք և սերմ տերմինները, իսկ մնացածները չեն ստացել իրենց հակիրճ ձևը:

Այսպիսով, Աբուսայիդի գործի վերլուծությունը և այն եզրակացությունները, որոնք արվում են Ամիրդովլաթ Ամասիացու գործերը, հատկապես «Օգուտ բժշկութեան»-ը ուսումնասիրելիս, գծում են հայ բժշկական որոշ տերմինների կազմավորման ուղին՝ տերմին-նկարագրությունից դեպի միջակա պրիմիտիվ տերմինը և ապա որոշակի իմաստ արտահայտող կայուն բառ-տերմին:

Ավարտելով Աբուսայիդի և Մխիթար Հերացու կազմախոսական գործերի բժշկական տերմինների վերլուծությունը, հանգում ենք հետևյալ եզրակացություններին.

1. 12-րդ դարի հայ բժշկական տերմինաբանությունը գտնվում էր բավական բարձր գիտական մակարդակի վրա. նրա տերմինների ճնշող մեծամասնությունը (75 տոկոսը) կազմում էին բնիկ հայկական բառեր:

2. Հայ բժշկական տերմինաբանությունը սերտ կապեր է ունեցել օտար և հատկապես արաբական և հունա-լատինական տերմինաբանության հետ, օգտվելով նրանց գիտական գանձերից:

3. Հայ բժշկական տերմինաբանության զարգացման գործում մեծ դեր են խաղացել Աբուսայիդը և Մխիթար Հերացին: Սակայն տերմինակերտման արվեստի և հմտության տեսակետից մենք առաջնության դափնին տալիս ենք Մխիթար Հերացուն ոչ միայն որպես թարգմանչի, այլ նաև որպես տերմինների ստեղծող նորարարի, որպես բժշկական տերմինաբանության մեջ հարատև և կայուն ավանդույթ ստեղծողի:

* * *

Հայերեն բոլոր տերմինների բացատրությունը, ինչպես նաև հունա-լատիներեն և արաբերեն տերմինների ստուգաբանությունը կատարված է հետևյալ բառարանների օգնությամբ.

Աբեղյան Մ., Հովհաննիսյան Լ. և Տեր-Պողոսյան Ա.—Լատին-ռուս-հայերեն բժշկական բառարան, Երևան 1951:

Աճառեան Հ.—Հայերէն գաւառական բառարան, Թիֆլիս, 1913:

Աճառեան Հ.—Հայերէն Արմատական բառարան, հ. Ա-է, Երևան, 1927—1935:

Աւետիքեան Գ., Սիւրմէլեան Խ., Աւգերեան Մ.—Նոր բառգիրք Հայկազեան լեզուի, երկու հատորով, Վենետիկ, 1836:

Баранов Х.—Арабско-русский словарь, Москва, 1957:

Բաղպաղեան Փ.—Բառարան հայերէնէ-արաբերէն և արաբերէնէ-հայերէն, Պէյրութ, 1960—1964:

Lidell H. G. and Scott R.—Greek—English Lexicon, Oxford, 1940.

*Кронберг И.*— Латинско-русский и русско-латинский лексикон, Москва, 1870.

Ղարիբյան Ա.—*Ռուս-հայերեն բառարան, Երևան, 1968։*

Մալխասյանց Ստ.—*Հայերէն բացատրական բառարան, 4 հատորով, Երևան, 1944—1945։*

Մելիք-Փարսադանյան Խ., Սեպետչյան Հ.—*Բառարան (անտիպ)։*

Միսքճեան Յ.—*Ձեռն բառագիրք հայերէն-լատիներէն, Հռոմ, 1887։*

*Sophocles E. A.*—Greek Lexicon of the Roman and Byzantine Periods, vol. 1 a 2, New York.

## ՀԱՅԵՐԵՆ-ԼԱՏԻՆԵՐԵՆ ԲԺՇԿԱԿԱՆ ԲԱՌԱՐԱՆ

*(Ըստ Մխիթար Հերացու և Աբուսայիդի կազմախոսական գործերի)*

| Միջնադարյան | Արդի հայերեն | Արաբերեն | Լատիներեն | Հունարեն |
|---|---|---|---|---|
| *Աղալա(ունք) | մկան, մկաններ | عضلة | musculus | |
| Ախտ | հիվանդություն, ախտ | | morbus | |
| Ախրապատին | միջին դարերում դեղագիտության և դեղաշինության գիրք | اقرابادين | grafidion | γραφίδιον |
| Ականջ | ականջ | | auris | |
| Ահոկ | հանցանք, վնաս | | noxa | |
| Ահոկել | վնասել | | nocere | |
| Աղբիւր | արտասվալիճ | | lacus lacrimalis | |
| Աղէկ մանկտիք | չար ոգիներ | | | |
| Աղէճորա | աղիք | | intestinum | |
| Աղիք | աղիք, աղիքներ | | " | |
| Աղուաշ | խենթուկ, ցնորված | | vesanus | |
| *Աղտայ մրջպատան | բաշխող և կերակրող | | | |
| Այտ | այտ | | gena, bucca | |
| Անդամ | 1. գործարան<br>2. ազդր, ազդրոսկր | | 1. organon<br>2. femur | |
| Անզգայ | զգայությունը կորցրած, անզգա | | insensibilis | |
| Անտիճելիք | խորհրդածություն, մտածողականություն | | intellectus | |
| Աշիկայ | կույր | | coecum | |
| Աչք | աչք | | oculus | |
| *Ապիկենի | ապակենի | زجاجي | corpus vitreum | |
| Աստառաղն բերնին | քիմք | | palatum | |

* Որոշ դեպքերում տերմինի ծագումը պարզաբանելու համար արվում են արաբերեն և հունարեն համարժեքներ, իսկ համապատասխան լատիներեն տերմինի բացակայության դեպքում բացատրությունները արվում են հայերեն. աստղանիշով նշանակված են մեր կողմից առաջարկված տերմինները։

| | | | | |
|---|---|---|---|---|
| Առողջութիւն | առողջություն | | sanitas | |
| Աստառ | թաղանթ | | membrana | |
| Ատամ | ատամ | | dens | |
| Արաղան | դեղնախտ | يرقان | icterus | |
| Արգանդ | արգանդ | | uterus | |
| Արիւն | արյուն | | haema | |
| *Արկ | ցանցենի | شبكية | retina | |
| Արմունկ | արմունկ | | cubitus | |
| Արտասուք | արտասուք, արցունք | | lacrima | |
| *Արտաքսելն առաջին | միզանցքի բացվածք | | orificium urethrae | |
| *Արտաքսելն վերջինն | հետանցք, սրբան | | anus | |
| *Ա̈ւար | կույր աղիք | الأعور | intestinum coecum | |
| *Արհալ | բազիլիկ երակ | الأكحل | v. basilica | βασιλική |
| Արուք | կղանք | | faeces | |
| | Բ | | | |
| Բազուկ | ծղիկ, ծղոսկր | | ulna | |
| *Բաթ | վերք, խոց | بط | vulnus, ulcus | |
| Բարք | ախորժակ | | appetitus | |
| Բերան | բերան | | os | |
| Բէճ | ուսագլուխ, կռնակ | | capitulum humeri | |
| Բժիշկ | բժիշկ | | medicus, jater | |
| Բիբ | բիբ | | pupilla | |
| Բնութիւն | բնություն, էություն | | natura, substantia | |
| | Գ | | | |
| Գիջութիւն | հեղահյութ | | humor | |
| Գլխացաւ | գլխացավ | | cephalgia, cephalea | |
| Գլուխ | գլուխ | | caput, | κεφαλή |
| Գործ | գործունեություն, գործառնություն | | functio | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| | Դ | | | |
| *Դռնապան | դրուն | بواب | pylorus | πυλωρός |
| *Դռներով աղէձորս | » | | " | |
| Դեղ | դեղ | | medicamentum | |
| Դմուրցաւ, դամարցաւ | երակաբորբ | | phlebitis | φλεβῖτις |
| | Ե | | | |
| Ելունդ | թմբիկ, պալար | | tuberculum | |
| Եղջերենի | եղջերենի | قرنية | cornea | |
| Երակ | 1. անոթ | | 1. vas | |
| | 2. երակ | | 2. vena | |
| | 3. ջիղ | | 3. nervus | |
| Երակ առնել | արյունառություն | | | |
| Երես | դեմք, երես | | facies | |
| Երիկամունք | երիկամ | | ren | |
| *Երկոտասան | տասներկումատնյա աղիք | الاثنى عشرى | duodenum | |
| Երկուորիք | ամորձիք | | testiculus, testis, ovulum, orchis | |
| Երնձկատալ | հորանջել | | | |
| | Զ | | | |
| Զանկիկ | լեզվակ | | lingula | |
| Զգայութիւնք | զգայարաններ | | organon sensuum | |
| Զեն | վնաս | | noxa | |
| Զենութիւն | վնաս, չարիք | | | |
| Զուհրայ | Արուսյակ մոլորակ | الزهرة | Venus | |
| Զուճաճի | ապակենի | زجاجي | corpus vitreum | |
| | 1. հոդ | | 1. articulatio | |
| Զօդուած | 2. գործարան | | 2. organon | |
| Զօհալ | Երևակ մոլորակ, Սատուրն | زحل | Saturn | |

| | | | |
|---|---|---|---|
| | Ը | | |
| *Ըռուտուպաթ | հեղանյութ | رطوبة | humor |
| | Թ | | |
| Թաթ | ձեռք, դաստակ | | manus |
| Թաթ ոտից | ոտ, ներբան | | pes |
| Թարթիչ, թարթեանունք | արտեւան, արտեւանունք, թարթիչ | | cilium |
| Թոք | թոք | | pulmo |
| Թուխմայ | ստամոքսի խանգարում, դժվարամարսություն | تخمة | gastricismus |
| | Ի | | |
| *Իթնայաշարայ | տասներկումատնյա աղիք | الاثني عشري | diodenum |
| Ինթիշար | բիբի լայնանալուց լույսի ցրվել, սփռվելը | انتشار | |
| Իշխանական | միտք | | intellectus |
| Իսթիսղայի լահմի | այտուց | استسقاء لحمي | oedema |
| | Լ | | |
| Լակուայ | դիմային նյարդի լուծանք | لقوة | paralysis n. facialis |
| Լեզու | լեզու | | lingua |
| Լեղի | լեղապարկ | | vesica fellea, cholecystis |
| Լերդ | լյարդ | | hepar |
| Լիսեռ | ողն | | vertebra |
| Լսելիք | լսողություն | | auditus |
| *Լուծումն ի վեր | փսխում | | vomitus, emesis |
| Լուծումն ի վար | լուծ, փորլուծություն | | diarrhoea |
| Լուծման դեղ | լուծողական | | laxantia |
| Լուծք ջղեր | զույգ ջղեր | | nervus gemellus |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Լոյս | լույս | | lux, lumen | |
| Լուսաբեր | Արուսյակ մոլորակ | | Venus | |
| Լուսնթագ | Լուսնթագ | | Yupiter | |
| *Լուսէնիօն | տեսաներվ | | n. opticus | |
| | **Խ** | | | |
| Խաղաւարտ | խոց | | ulcus | |
| *Խաղողենի | ծիածան | عنبية | iris (uvea Galeni) | |
| Խառնուածք | խառնվածք | | crasis | |
| Խառնիլ | եղջերենի | قرنية | cornea | |
| Խելապատակ | ուղեղապատակ | | meninx, | μῆνιγξ |
| Խելք | միտք, խելք | | intellectus | |
| Խեչափառ | քաղցկեղ | | cancer, carcinoma | |
| Խծկած | բիբի կալնում | | obturatio, occlusio (pupillae) | |
| Խիլտ | հեղանյութ | الخلط | humor | |
| Խոզք | խոզատանձ | | scrofula | |
| *Խոճատամ | կոշտ, անհարթ, փշոտ | | | |
| Խօսք | խոսք | | logos | |
| Խոց | խոց | | ulcus, helcos | |
| Խռչակ | կոկորդ, խռչակ | | larynx | |
| Խուլ | խուլ | | surdus | |
| Խումար | խելագար | خمار | amens | |
| Խումարութիւն | խելագարություն | | amentia | |
| | **Ծ** | | | |
| Ծաղիկ | ծաղիկ | | variola | |
| Ծամելիք | ծնոտ, ծամելու գործարան | | maxilla | |
| Ծիծ | ստինք, կանացի կրծքագեղձ, ծիծ | | mamma | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ոսկր | բազկոսկր | | os brachii, humerus | |
| Ծննդյան տեղ | կոնք | | pelvis | |
| Ծնունդ | ծնունդ | | partus | |
| Ծոծրակ | գլխատակ, ծոծրակ | | occiput | |
| Ծունկ | ծնկոսկր, ծունկ | | patella, rotula | |
| | Կ | | | |
| Կաթ | կաթ | | lac | |
| *Կաթարին | 1. ավիշ<br>2. ավշային անոթներ, | | 1. lympha<br>2. vas lymphatica | |
| Կաթուղիկէ | բազկի երակ | | v. catholica | καθολική |
| *Կամշ | բորբոքային հեղանյութ, մատերիա | قماش | | |
| *Կարհայ | խոց | قرحة | ulcus | |
| Կեանք | կյանք | | vita | |
| Կիֆալ | կեֆալիկ երակ | | v. cephalica | κεφαλική |
| Կող | կող | | costa | |
| Կողացաւութիւն | պլևրիտ | | pleuritis | |
| *Կոշրած | շաղկապենի | ملتحمة | conjunctiva | |
| Կոպ (վերին, ներքին) | կոպ | | palpebra, blepharon | |
| Կռճիկ | աճառ | | cartilago, chondros | |
| | Հ | | | |
| Հազիմ | մարսեցնող | هاضم | | |
| Հաւայ | օդ | هواء | aer | |
| *Հիլաթ | հիվանդություն | علة | morbus | |
| *Հիմն և ուղղութիւն աղեձորացն | ուղիղ աղիք | المستقيم | intestinum rectum | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Հոգի (բնութեան, կենդանութեան, զգայութեան, տեսողական) | հոգի | | pneuma | |
| | Ձ | | | |
| Ձայն | ձայն | | vox | |
| *Ձայնաւոր աղէճորտ | խթաղիք | | colon | κῶλον |
| Ձեռն | ձեռք | | manus | |
| *Ձվի սպիտակուցենի | ջրային հեղանյութ | | humor aqueus | |
| *(Նոյր սպիտակուց ձվի) | | | | |
| Ձուք | ամորձի, երկուորիք | | testis, orchis | |
| | Ղ | | | |
| Ղալապայ առնել | հաղթել | غاب | | |
| *Ղուլին | խթաղիք | قولون | colon | κῶλον |
| Ղուլինջ | խիթ | قولنج | colica | κωλική |
| *Ղուֆր | համանական է աղավաղված՝ քաֆ, քափ, փրփուր | | | |
| | Ճ | | | |
| Ճազիպ | քարշող | جاذب | | |
| Ճալիտի | ոսպնյակ | جليدي | lens crystallina | |
| Ճակատ | ճակատ | | frons | |
| Ճակատին ոսկր | ճակատոսկր | | os frontale | |
| Ճուռ | կոնքոսկր | | coxa | |
| | Մ | | | |
| Մազ | մազ | | pilus | |
| Մազկալած | նուրբ ճեղքվածքներ ունեցող | | | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Մահ | մահ | | mors | |
| Մաղաս | լորձ | مغص | phlegma | |
| Մաղձ | լեղի | | bilis, fel, chole | |
| (Մաղձ խարտեաշ, Մաղձ սև) | | | | |
| Մաճառ | ճաճանչային զարկերակ | المجس | a. radialis | |
| *Մանր աղէճարտ | գալարաղիք, զստաղիք | | intestinum ileum | |
| Մաշկ | թաղանթ | | membrana | |
| Մանիխ | Հրատ մոլորակ | المريخ | Mars | |
| Մասիք | բռնող | ماسك | | |
| Մատունք | մատ, մատներ | | digitus | |
| Մէջք | թիկն, թիկունք, կռնակ, մեջք | | dorsum | |
| Միթխալ | ծանրության քաշ՝ համապատ մեկ ու կես դրամի և 5,1 գրամի | مثقال | | |
| Միզդ, միզն | թաղանթ | | membrana | μήνιγξ |
| Միզուկ | միզանցք | | urethra | |
| Միս | 1. մկան<br>2. միս | | 1. musculus<br>2. caro | |
| Մկնատամ | որքին | | lichen | |
| Մկունք | մկան | | musculus | |
| Մշիմայ | 1. անոթենի<br>2. սաղմը պատող թաղանթ | مشيمة | 1. chorioidea<br>2. chorion | |
| Մոռացում | անհուշություն | | amnesia | |
| Մորթ, մորթի | 1. թաղանթ<br>2. մաշկ | | 1. membrana<br>2. corium, derma, cutis | |
| Մսան | մարմնի մսոտ մասը, մանավանդ մեջքից ներքև | | musculus ətissimus dorsi (m. gluteus) | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Մուլթահիմայ | շաղկապենի | ملتحمة | conjunctiva | |
| *Մուհրատիլ | սիրելի, դուրեկան | محبة | | |
| Մուշթարի | Լուսնթագ | مشتري | Yupiter | |
| *Մուսթաղիմ | ուղիղ աղիք | المستقيم | intestinum rectum | |
| Մորուս, մօրուք | մորուք | | barba | |
| | Յ | | | |
| Յանկապութիւյ | ցանցենի (ոչ տարբերակված մասը) | عنكبوتية | retina | |
| *Յանապիայ | ծիածան | عنبية | iris (uvea Galeni) | |
| Յաւելուած | ավելցուկ | | cumulus | |
| Յիմար | խելագար | حمار | amens | |
| Յիշողութիւն | հիշողություն | | memoria | |
| Յօնք, յունք | ունք | | supercilium | |
| | Ն | | | |
| *Ներքին բերանն ստամոքսին | դռունն | | | |
| Նուազ մի ամէտրաւ | կողովաձոր (պատենաձոր) դաշխուրան | | pylorus | πυλωρός |
| | Շ | | | |
| *Շապարիայ | ցանցենի | شبكية | retina | |
| Շարժողութիւն | շարժում | | actus, agitatio | |
| Շիրիան | զարկերակ | شريان | arteria | |
| Շիրիկ | կնճիթ, քունջութ | | sesamum | |
| Շլնի | վիզ, պարանոց | | collum, cervix | |
| Շլութիւն | շլություն | | strabismus | |
| Շունչ | շնչառություն, շունչ | | respiratio | |
| | Ո | | | |
| Ողն | ողն | | vertebra | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ողնաշար | ողնաշար | | columna vertebralis | |
| Ոսկր | ոսկոր | | os | |
| Ոտք | ոտ | | pes | |
| Որովայն | փոր, որովայն | | abdomen, venter | |
| | Պ | | | |
| Պալղամ | լորձ | بلغم | phlegma | |
| Պահողութիւն | հիշողություն | | memoria | |
| *Պապ | դրույլ | باب | pylorus | πυλωρός |
| Պասլիկ | բազկի խոր հիմնական երակ; շահամար | | v. basilica | βασιλική |
| *Պինդ մարմին | պնդենի | صليبة | sclera | |
| Պիսակ | պիսակ | | vitiligo | |
| Պորտ | պորտ | | umbilicus, omphalos | |
| Պտուղ աչքի | բիբ | | pupilla | |
| | Ջ | | | |
| Ջիղ | 1. նյարդ | | 1. nervus | |
| | 2. ջիլ | | 2. tendo | |
| | 3. մկան | | 3. musculus | |
| Ջիլ | ջիլ | | tendo | |
| Ջղային | նյարդային | | nervosus | |
| Ջրհեղ | 1. մեզ | | 1. urina | |
| | 2. միզածորան | | 2. ureter | |
| *Ջուր | արտազատանք | | secretum | |
| *Ջուր աչի | արտասուք, արցունք | | lacrima | |
| *Ջուր լեղի | ծծումբ (ականջի) | | sulfur (auriculare) | |
| *Ջուր բաղցր | թուք, շողիք | | saliva | |
| *Ջուր հոտած | սերմ | | sperma | |

## Ս

| | | | | |
|---|---|---|---|---|
| *Սայիմ | աղիճ, քաղցած աղիք | صائم | intestinum jejunum | |
| *Սառնենի | ոսպնյակ | جليدي | lens crystalina | |
| Սավտայ | սև մաղձ | سوداء | atrabilis | |
| Սավտայկոտ | մելամաղձոտ | | | |
| Սարդոստենի | ցանցենի (ոչ տարբերակված մասը) | عنكبوتية | retina | |
| Սաքթայ | ուղեղային կաթված | سكتة | apoplexia cerebri | |
| Սաֆրայ | խարտյաշ մաղձ | الصفراء | | |
| *Սեկ | 1. անոթենի | | 1. chorioidea | |
| | 2. սաղմի պատող թաղանթը | | 2. chorion | |
| Սերմ | սերմ | | sperma | |
| Սիրտ | սիրտ | | cor | |
| Սկուտակ | գանգ | | cranium | |
| Սպի | սպի | | cicatrix | |
| Սսխայ | ջրգողություն | استسقاء | ascites | |
| Ստածում | բուժում | | medicatio | |
| Ստամոք | ստամոքս | | ventriculus, gaster | γαστήρ, στόμαχος |
| Ստամոքին յատակն | ստամոքսի հատակ | | fundus ventriculi | |
| Սրունք | սրունք | | crus | |
| Սուլիպէ | պնդենի | صلبة | sclera | |

## Վ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *Վաթած | բիբի լայնանալուց լույսի ցրվելը, սփռվելը | | | |

## Տ

| | | | | |
|---|---|---|---|---|
| *Տաղիղ | զալարաղիք, զստաղիք | دقيق | intestinum ileum | |
| Տապաղայ | 1. թաղանթ | طبقة | membrana | |
| | 2. խավ, շերտ | | | |

| | | | |
|---|---|---|---|
| Տարաճայ | աստիճան | درجة | gradus |
| Տաֆիայ | վտարաղ | طافية | |
| Տեսանելիք | տեսանելիք, տեսողական օրգան | | organon visus, lux |
| Տեսութին | տեսողութիւն | | visus |
| | Ց | | |
| *Ցամար աղէճորտ | աղիճ, բաղցած աղիք | | intestinum jejunum |
| Ցանկութին | սեռական հակում | | libido sexualis |
| Ցաւ | հիւանդութիւն | | morbus |
| Ցաւած | հիւանդ | | aegrotus |
| | Ու | | |
| Ուխտաւոր (ըխտաւոր) | վերնոտ, լուսնոտ | | epilepticus |
| Ուխտաւորութին (ըխտաւորութին) | վերնոտութիւն, լուսնոտութիւն, ընկնաւորութիւն | | epilepsia |
| Ուղեղ (ըղեղ) | ուղեղ | | cerebrum, encephalon |
| Ուռեցուորութին | այտուց | استسقاء لحمي | oedema |
| | Փ | | |
| Փալափուշա | միզափամփուշտ | | vesica urinaria |
| Փայծաղ | փայծաղ | | lien |
| Փող | շնչափող | | trachea |
| *Փող չեղ | տեսանելով | | n. opticus |
| Փոր | փոր, որովայն | | abdomen, venter |
| Փորացաւութին | 1. ստամոքսի բորբոքում<br>2. աղեբորբ | | 1. gastritis<br>2. enterocolitis |
| Փորոք, փորուած | գանգուղեղի փորիկ, փորոք | | ventriculus encephali |
| | Ք | | |
| Քար | քարի հիւանդութիւն | | lithonephrosis |

| | | | |
|---|---|---|---|
| *Քիթ* | *քիթ* | | nasus |
| *Քթափող* | *քթածակ, ռունգ* | | naris |
| *Քնատեղ* | *քունք* | | tempus |
| *Քոս* | *քոս* | | scabies |
| *Քութեշ* | *Հարսանիթ, վարդածոց, քութեշ* | | scarlatina |
| **Քոննաշ* | *ժողովածու* | كناشة | |

**Օ**

| | | | |
|---|---|---|---|
| *Օդ (*պիստատ, *խու-պատ)* | *օդ (ներշնչման, արտաշնչման* | | aer (inspiatorius, ex-piratorius) |
| *Օտարիտ* | *փայլածու մոլորակ* | عطارد | Mercurius |

**Ֆ**

| | | | |
|---|---|---|---|
| *Ֆալիճ* | *անդամալուծություն* | فالج | paralysis |

С. А. ВАРДАНЯН

# АРМЯНСКАЯ МЕДИЦИНСКАЯ ТЕРМИНОЛОГИЯ В XII ВЕКЕ (НА ОСНОВАНИИ ТРУДОВ МХИТАРА ГЕРАЦИ И АБУСАИДА ПО АНАТОМИИ)

В настоящей работе автором были изучены армянские медицинские термины XII века на основании принадлежащего перу Мхитара Гераци фрагмента «О строении глаза» и «Анатомии человека» Абусаида.

Проведенное исследование позволило автору прийти к следующим выводам:

1. Армянская медицинская терминология в XII веке находилась на довольно высоком научном уровне .Подавляющее большинство ее терминов составляли коренные армянские слова (75%).

2. Армянская медицинская терминология была тесно связана с арабской и греко-латинской терминологией. В вышеупомянутых трудах Мхитара Гераци и Абусаида подавляющее большинство заимствованных терминов—арабского и греческого происхождения.

3. В развитии армянской медицинской терминологии большую роль сыграли крупнейший армянский врач средневековья Мхитар Гераци и врач сирийского происхождения Абусаид, трудившийся на ниве армянской медицины. По нашим данным, Мхитар Гераци использовал 27 новых терминов, а Абусаид—37. Особенно велика заслуга Мхитара Гераци, который создал целую традицию в области медицинской терминологии, в частности, в области офтальмологии.

4. На основании изучения медицинских терминов, извлеченных из вышеупомянутых трудов Мхитара Гераци и Абусаида, автором был составлен армянско-арабо-латинский медицинский словарь средневековых армянских терминов, который служит приложением к статье (280 терминов).

S. A.VARDANIAN

# LA TERMINOLOGIE MEDICALE ARMÊNIENNE AU XII SIECLE (D'APRÊS LES OUVRAGES EN ANATOMIE DE MKHITAR HERATSI ET D'ABOUSSAID

L'article est consacré aux termes médicaux arméniens du XII siècle extraits du fragment „Sur la structure de l'oeil" de Mkhitar Heratsi et de „L'anatomie de l'homme" d'Aboussaid.

Une étude minutieuse a permis à l'auteur de conclure:

1. La terminologie médicale arménienne se trouvait au XII siècle à un niveau assez élevé. La majeure partie des termes étaient d'origine arménienne (75%).

2. La terminologie médicale arménienne était étroitement liée à la terminologie arabe et gréco-latine. Dans les ouvrages précités de Mkhitar

Heratsi et d'Aboussaid la plupart des termes empruntés sont d'origine arabe et grecque.

3. Mkhitar Heratsi, le célèbre médecin arménien du Moyen Age, et Aboussaid, médecin d'origine syriaque mais travaillant dans le domaine de la médecine arménienne, ont joué un rôle important pour le développement de la terminologie médicale arménienne. D'après nos données Mkhitar Heratsi a utilisé 27 nouveaux termes médicaux et Aboussaid 37. Particulièrement grand est le mérite de Mkhitar Heratsi qui a établi les traditions de la terminologie médicale, en particulier dans le domaine de l'ophtalmologie.

Le travail sur les termes médicaux extraits des ouvrages de Mkhitar Heratsi et d'Aboussaid a permis à l'auteur de l'article de rédiger un dictionnaire armeno-latin des termes médicaux de l'Arménie médiévale. Ce dictionnaire comprenant près de 280 termes est donné en appendice.